## ՍՊԱՐԱՊԵՏԻՆ ԱԶԴԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

Եւրոպական միացեալ բանակի ընդհ. հրամանատարը զօր. Այզընհաուըր, որ վաղը Փարիզ կը հասնի, ազդարարեց լրագրական ասուլիսի մը մէջ.

— « Եթէ արեւմտեան երկիրները կ'ուզեն մեր հասարակաց նպատակներուն յատկացնել իրենց միջոցներուն, իրենց աշխատանքի ժամերուն եւ իրենց ճիգերուն բաւարար մէկ մասը, այդ բոլորը մեզմէ ամէն մէկուն համար զոհողութիւններ պիտի նշանակեն: Բայց մեր կազմակերպութիւնը բան մըն ալ պիտի չկրնայ գլուխ հանել, եթէ Ամերիկայի կատարած զոհողութիւնը, նոյն չափով, Արեւմտեան Եւրոպայի մէջ ալ չկատարուի: Եթէ յաջողինք միացնել եւրոպական ազգերը, մեզի համար անկարելի բան չի մնար այլեւս: Կրնանք իրագործել մեր նպատակները»:

Փարիզ գալէ վերջ, զօր. Այզընհաուըր պիտի այցելէ Ատլանտեան Դաշինքի անդամ բոլոր երկիրներու մայրաքաղաքները :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԹԷՀՐԱՆԻ թերթերը կը գրեն թէ խորհրդային կառավարութիւնը ծանուցագիր մը ուղղած է, 10 միլիոն տոլար հատուցում պահանջելով իրանեւ-սովետական քարիւղի ընկերութեան մէջ դրած դրամագլուխին համար (1946): Այս ընկերութիւնը չկրցաւ գործել, իբրեւ հետեւանք խորհրդարանի բացասական դիրքին: Իրազեկներ կ'ըսեն թէ Խ. Միութիւնը խնդիրը կը յարուցանէ անոր համար որ, Պարսկաստան նա պահանջած էր Մոսկուայի մէջ վար դրուած ոսկին, ինչպէս եւ 8 միլիոն տոլար կ'ուզէր, իբրեւ ծախք խորհրդային զինուորներու, պատերազմի ընթացքին :

ԹԱՆՃԷՐԻ մէջ 30 անծանօթներ յարձակում գործեցին «Ամերիկայի Ձայնը» կայանին վրայ, քարկոծելով պահապանները :

ՀՆԴԿԱՉԻՆԷՆ հասած վերջին լուրերը կը հաստատեն թէ ֆրանսական զօրքը մեծ յարձակողականի մը ձեռնարկած են, պաշարելու համար Թոնքինի սպառնացող ապստամբները: Այս վերջինները լեռները կը քաշուին: Զօր. տը Լաթր անձամբ կը վարէ գործողութիւնները, թնդանօթներով եւ օդանաւերով :

ՎԱԽՃԱՆԵԱԼ ԳՐ. ԵՊԻՍԿ. ՊԱՀԱՊԱՆԵԱՆԻ յուղարկաւորութիւնը պիտի կատարուի երկուշաբթի, ժամը 10.30ին, Սէն Սիւլփիս եկեղեցին : Մանրամասնութիւնները յաջորդով :

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ՎԻԷՆԻ ՄԷՋ

ՎԻԷՆ.— Տէր եւ Տիկին Տ. Մուրատեան եւ զաւակները հոգեհանգստեան պատարագ մատուցանել կուտան իրենց վաղամեռիկ զաւկին, եղբօր ԳՐԻԳՈՐ ՄՈՒՐԱՏԵԱՆի մահուան Գ. տարելիցին առթիւ, այս կիրակի առաւօտ ժամը 9ին, Սէն Մարթէնի եկեղեցիին մէջ: Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները:

### ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ – ՏՕՆԱԾԱՌ

Կազմակերպուած Տէսինի դպրոցին հոգաբարձութեան կողմէ եւ մասնակցութեամբ աշակերտութեան :

Մեծ խնամքով ու պատրաստութեամբ կը տօնուի «ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ», այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին Հ. Յ. Դ. Տան մէջ :

Պիտի ըլլան սիրուն անակնկալներ :

Կը հրաւիրուին Տէսինի եւ Լիոնի մեր հայրենակիցները :



## Բացում Համազգայինի Լսարանի

Համազգային Լսարանին Ա. հաւաքոյթը տեղի կ'ունենայ Յունուար 12ին, Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Le Cadet սրճարանին վերնայարկը:

Կը խօսի ընկեր ՄԿՐ. ՊԱՐՍԱՄԵԱՆ

Նիւթը՝ «Միսաք Մեծարենցի կեանքն ու գործը»: Մէջ ընդ մէջ հատուածներ պիտի կարդացուին հեղինակին գործերէն;

Մուտքը ազատ է :

## Ընկերական խնջոյք

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Փարիզի շրջանի բոլոր անդամներուն համար :

Կիրակի 7 Յունուար ժամը 15ին, Studio Colibri, 19a rue Caumartin:

## Տարեկան մեծ պարահանդէսը

### ՖՐ. Կ. ԽԱՉԻ ՄԱՐՍԷՅԼ ՔԱՂԱՔԻ Մ. ՆԱՃԻՒՂԻՆ

Այս շաբաթ գիշեր մինչեւ լոյս :

Հայկական Ծնունդի առթիւ: Ընկերվարական ակումբներու սրահին մէջ, 51 rue Grignan:

Ծոխ պիւֆէ: Հաճելի անակնկալներ, Հայկական եւ եւրոպական նուագ :

### ՏՕՆԱԾԱՌ – ՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Ֆր. Կ. Խաչի Իսիի «Խրիմեան» վարժարանի կրթական մարմինի կողմէ, այս կիրակի ժամը 15ին Խրիմեան սրահին մէջ : Երգ, պար, նուագ, ներկայացում մը, անակնկալներ արենուշներու կողմէ եւ Կաղանդ Պապան :

### ՀԱՅԿԱԿԱՆ ԾՆՈՒՆԴԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Շաբաթ ԾՆՈՒՆԴ, սկզբ. ժամերգ. ժամը 8–ին, Ս. պատարագ ժամը 10ին, Ջրօրհնէք ժամը 12ին, Օր. Հայկանուշ Թորոսեան պիտի երգէ «Ով Զարմանալի»ն:

Կիրակի, Բ. օր Ծննդեան, յիշատակ մեռելոց, պատարագ ժամը 10ին, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Վռամշապուհ արք. ՔԻՊԱՐԵԱՆի յիշատակին: — Հոգաբարձութիւն

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Մարսէյլ, Սէն Լու Հ. Յ. Դ. « Սիամանթօ » խումբի ընկերահամակրական խնջոյքը այս կիրակի իրիկուն ժամը 8էն մինչեւ կէս գիշեր, հովանաւորութեամբ ԱԿՆՈՒՆԻ ենթակոմիտէի եւ մասնակցութեամբ Կապ. Խաչի: Մուտքը ազատ է:



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Զաւարեան կոմիտէի ընդհ. ժողովը այս շաբաթ իրիկուն, Խրիմեան դպրոցը: Կարեւոր օրակարգ:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի ընդհ. ժողովը կիրակի առտու ժամը 9.30ին, ծանօթ հաւաքատեղին :

ՊԱՆԵԷՕ ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէն եւ Կապոյտ Խաչի մասնաճիւղը կազմակերպած են այց ընկերուհի Ռ. ԱԼԹՈՒՆԵԱՆի գերեզմանին, իր մահուան Ա. տարեդարձին առթիւ, այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին: Հաւաքուիլ ընկեր Մ. Ալթունեանի բնակարանը, 17 rue Ampère, Cachan:

ԱՐԵՒՄՈՒՏՔԻ ԼՍԱՐԱՆԸ տօնական արձակուրդէն ետքը կը վերսկսի իր աշխատանքը: Իր հերթական գումարումը՝ այս երկուշաբթի երեկոյ, Քաֆէ Ռէժանի վերնայարկը: Կը խօսի Պ. Հր. Բալուեան: Նիւթ՝ «Մեքենային քաղաքակրթութիւնը եւ իր ազդեցութիւնը՝ հայկական մշակոյթին վրայ »:

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ (Վարչական)

ՓԱՐԻԶ (19) Սահ. վճարած էք մինչեւ 951 Մարտ:

ՍԷՆ ՄՈՐԻՍ.— Տիկ. Ք. վճարած կ'ըլլաք մինչեւ 951 Յունիսի վերջ:

ՊՈԼԻՍ.— Գումարի ծանուցման մէջ գրուած է թէ ուր պէտք է դիմէք :

ՎԻԷՆ.— Թէրզեան, երկու ամսական միայն 350 ֆրանք :

### ԿԱԹՈՂ. ՊԱՏՈՒԻՐԱԿԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Մարսէյլ – Փրատոյի Մայր Եկեղեցիի Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ՝ Կաթող. Պատուիրակ ԱՐՏԱՒԱԶԴ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԻՒՐՄԷԵԱՆ Ս. Ծնունդի տօներուն առիթով պիտի գտնուի Մարսէյլ եւ Մայր Եկեղեցիի մէջ պիտի պատարագէ եւ քարոզէ Ճրագալոյցի, Ս. Ծնունդի եւ Մեռելոցի երեք օրերը: Կը հրաւիրուին Կրօն. Ընկերակցութեան անդամները եւ հաւատացեալ ժողովուրդը :




Le Gérant : A. NERCESSIAN

Imprimerie DER AGOPIAN 17 rue Damesme - (13)

